**1917** № 31—ՕԳՈՍՏ.-Ի 13 ԵՐԿՐՈՐԴ ՏԱՐԻ

# ՀԱՄԲԱՒԱԲԵՐ

ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ ԳՐԱԿԱՆ ԵՒ ՔԱՂԱՔԱԿԱՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

ԿՈՎԿԱՍԻ ՀԱՅՈՑ ԲԱՐԵԳՈՐԾԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԵԱՆ

10 կոպէկ — Լոյս է տեսնում կիրակի օրերը — 10 կոպէկ



ԲԱԺԱՆՈՐԴԱԳԻՆԸ *տարեկան 4 ռուբլի, կէս տարուան 3 ռուբլի.*
*Արտասահման՝ տարեկան 5 ռ., կէս տարուան 3 ռ.*

ԽՄԲԱԳՐՈՒԹԻՒՆԸ՝ *Թիֆլիս, Արասարաղեան հրապար.* № 7։
*Հեռախօս* № 29.

*Պոստի հասցէն.*— Тифлисъ, „Амбаваберъ", Tiflis, Rédaction du journal «Hambavaber».



## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹԻՒՆ



## ՌՈՒՍԱԿԱՆ ՈՂԲԵՐԳՈՒԹԻՒՆԸ

*Ռուսաստանի քաղաքական և տնտեսական ճգնաժամի սրտաճմլիկ պատկերը մեր բոլորիս առջեն է. պատկերը ինքնին այնքան գունաքեղ է և պերճախօս, որ հարկ չկայ նորանոր գոյների և ներկերի նրա տպաւորութիւնը աւելի ազդու դարձնելու համար։*

*Այն ողբերգութիւնը, որ տեղի կունենայ հսկայական պետութեան թատերաբեմին, ամբողջ աշխարհը կըյուզէ և մենք դժբաղդաբար այդ ողբերգութեան թէ դերակատարներ և թէ հանդիսատեսներ ենք...*

*Ողբերգութեան դերակատարները լինելով, մեր դերին վտանգաւորութեան և սարսափելիութեան գիտակցութիւնը չունենք. չըգիտենք նաև թէ վտանգաւոր խաղը ուր կառաջնորդէ մեզ, ինչ անդունդներ կամ վիհեր կան մեր առջև. մենք այդ բոլորը չըգիտենք, կամ գիտնալու հնարաւորութիւնից կըզրկենք մեզ, որովհետև այն դերը որ կըխաղանք, այնքան զուարճալի ու զաւեշտական է, որ բոպէական ու վաղանցուկ հաճոյքը կուրացնում է մեր մանկական աչքերը...*

*Ողբերգութեան հանդիսատեսներս, զաւեշտական հրճուանքով տեսնում ենք դերակատարների ճարպիկ խաղերը և ամենաճարպիկին վարձատրում ծաղկեփնջերով և ովացիաներով։ Մեզ համար հետաքրքիր չէ թէ ով է խաղում բեմի վրայ և ինչ բան են խաղում, մեզ համար հետաքրքիրն այն է, որ մէկը մի բան խաղում է և այդ բանը խիստ զուարճալի և զաւեշտական է...*

*Ահա թէ որտեղ է մեր՝ հանդիսատես և դերակատար լինելու հանգամանքը։*

*Երէկ մի գերմանական ագենտ, Սուխումլինովը՝ սքանչելի զաւեշտ էր խաղում Ռուսաստանի թատերաբեմին, նրան ծափեցինք, ողջունեցինք և ապա ձանձրացանք, որովհետև խօ չի կարելի միևնոյն մարդու միևնոյն խաղը միշտ դիտել. մարդկային հոգին նորութիւններ կը փնտռէ, և ահա այսօր բեմ դուրս հանեցինք մի ուրիշ մարդ — Լէնինին, որին ողջունեցինք ու ծափահարեցինք...*

*Մեր աչքերը այնքան կոյր էին և մեր հոգիները այնքան մանկական, որ չը կարողացանք գիտնալ, որ թէ Սուխումլինովը և թէ Լէնինը միևնոյն կոմեդիան են խաղում, մենք չը կարողացանք հասկանալ, չէ՞ որ նրանց հագուստների գոյնը տարբեր էր, մէկը բարձրահասակ էր, միւսը կարճահասակ, մէկը «Նորին բարձրութիւն» տիտղոս կըկրէր, միւսը «ընկեր» անունով կըյորջորջուէր։ Մէկը աջից կառաջնորդէր դէպի հոռմ, միւսը ձախից...*

*Գլխաւոր դերակատարները հեռացան բեմից, մենք ծիծաղեցինք, ժպտացինք և վերջը յանկարծ սթափուեցինք և, որովհետև ուրիշ միջոցներ չըկային կամ չըգիտէինք մեր հիասթափութիւնը մեղմելու, այդ պատճառով կրկին սկսանք փնտռել ծիծաղաշարժ կոմեդիաներ, զուարճալի պատկերներ։*

*Եւ ահա այնքան տարուած ենք մենք դրանցով, որ մինչև իսկ ամենափոքրիկ ու կեղտոտ մանկլաւիկի խաղը կուզենք տեսնել, մինչև իսկ մենք էլ մեր լուման բերում ենք ընդհանուր օգնութեան, ծիծաղաշարժ կամ սրտաճմլիկ մի բան խաղալու համար։*

Սրտաճմլիկ չէ՞ միթէ, երբ մի չնչին լեզգի Թիֆլիսի փողոցից անցած պարագային առանց այլևայլի ատրճանակը կը հանէ և հճփ մի խեղճ անցորդի ճակատին...

Սարսափելի չէ՞ միթէ, երբ ռուսական ազատ կարգերի ժամանակ, աւազակութիւնը հետզհետէ զարգանում և ուռճանում է, մարդիկ իրար ետևից ընկնում ու մորթւում են, խաղաղ աշխատանքը դադարում է և քրտինքի տեղ արիւն է վազում։

Իսկ երբ այդ բոլորի համար ժողովրդի կողմից հարցապնդում է լինում պէտք եղած տեղը, պատասխանւում է, որ «ոչինչ չկայ», դրանք «չափազանցութիւններ» են, «կամաց-կամաց» կը հաստատուի կարգը։

Կոմեդիան շարունակւում է ամեն կողմ. հացթուխները հացատները փակում են, սովալլուկ ժողովրդի «պոչը» աւելի երկարացնելու համար, այս ու այն պարտէզում «անկցի պատերազմ», «մահ բուրժուազիային» ամենօրեայ բացականչութիւններ են լսւում ամբոխի համար։ Քաղաքացիներին խոստանում են մի րոպէի մէջ Սոլոլակն ու Գոլովինսկի պրոսպէկտը տեղափոխել Հալաբար և Դիղուբէ և վերջիններս տեղափոխել առաջինների տեղ։

Վաճառականները իրենց խանութների և ստորայարկ նկուղների մէջ, կենսամթերքների համագումար կընեն, չէ՞ որ կենսամթերքներն էլ կուզեն դեմոկրատիզացիայի ենթարկուել...։

Առևտրականը պատերազմի ընթացքում մի քանի հարիւր հազար ռուբլի դիզելուց յետոյ, այժմ դեմոկրատական կարգերին տեղի տալով, խանութը կողպում և մի տաք, խաղաղ անկիւն է քաշւում իր դիզած անհագին հարստութիւնը ուտելու և մարսելու համար։

Հապա եթէ ռազմաճակատի կոմեդիաները տեսնելու լինենք. այնտեղ անտարակոյս աւելի սրտաճմլիկ և զուարճալի պատկերներ են խաղացւում։

Երևակայեցէք մեր զինուորներին գերմանական խրամների մէջ, եղբայրական գիրկընդխառնում, սրտառուչ համբոյրներ, չէ՞ որ գերմանացիք կուզան ազատութիւն բերելու մեզ, նրանք մեր եղբայրներն են...։

Բայց ինչ. չի անցնում մի քանի օր և ահա գերմանացիները պատռելով մեր զօրքերի շղթան մտնում են մեր սեփական տան դռներին, մեզ մեր անկողինների մէջ բռնելու և խեղդելու համար։

Ռազմաճակատի ողբերգութիւնը արդիւնքն ու շարունակութիւնն է թիկունքի ողբերգութեան։ Թիկունքն է Ռուսաստանի ուղեղը, որ պիտի հրամայէ բազուկին—ճակատին։ Ուղեղի հիւանդութիւնից առաջացաւ ներկայ անելի ճգնաժամը, որի դէմ տիտաններ պէտք են կռուելու համար։

Ցարիզմի օրով մեծ ողբերգութեան հեղինակները բանսարկուներն ու բիւրոկրատներն էին, այժմ ամեն ոք է։ Ամեն անհատ, որ ապրում է Ռուսաստանում, աւելի կամ նուազ չափով մասն ունի այդ ողբերգութեան գործում։ Այժմ դրամայի հանդիսատեսների թիւը աւելի շատ է քան ակտեօրներից։

Եւ որովհետև բոլորն էլ աւելի կամ մեծ չափով մասնակից են Ռուսաստանի կործանման, այդ պատճառով ոչ ոք էլ յանձն չի առնում իր ուսերի վրայ պատասխանատուութեան հսկայական բեռը։

Ներկայ աղէտին գլխաւոր պատճառը մեր ուշադրութիւնն և մտահոգութեան կեդրոնի սխալ լինելն է. փոխանակ ռազմաճակատը դարձնելու մեր մտահոգութեան բեւեռակէտը և մեր բոլոր ներքին ոյժերը լարելու այնտեղ, ընդհակառակն ծանրութեան կեդրոնը փոխադրեցինք թիկունքը և նոյն իսկ ճակատի ուշադրութիւնն ևս հրաւիրեցինք թիկունքի ուղղութեամբ։

Այդ հանգամանքը ամենամեծ հարուածն տուաւ Ռուսաստանի արտաքին և ներքին քայքայման։

Մենք թիկունքի վրայ մի մեծ հրդեհ պատրաստեցինք և արտաքին վտանգը մոռանալով բոլորուեցինք ներքին հրդեհի շուրջ. եղան մեր մէջ շատերը, որ զուարճացան և ուրախացան հրդեհին պայծառութիւնից և սաստկութիւնից։

Հրդեհը մարելու համար հրապարակ եկողներից շատերը, մոռանալով հրդեհաշէջի իրենց նուիրական պարտականութիւնը, կրակը աւելի ևս սաստկացնելու և բոցավառելու աշխատեցին գաղտնօրէն։

Այժմ իրական պատերազմը թիկունքի վրայ է. դասակարգերի կռիւը աւելի հետաքրքրական է ամենքի համար քան հայրենիքի փրկութիւնը։

Դասակարգային կռիւը կլանել է երկրի ամբողջ էներգիան։ Ժողովրդի էներգիան այդ ուղղութեամբ վատնելով, արտաքին վտանգին ծառանալու այլևս ոյժը չը պիտի մնայ մեր երակներում։ Մեր կենսական ոյժերը սպառուելու վրայ են։ Արդիւնաբերութիւնը դադարել է։ Կառավարութեան գանձարկղում ամայութիւն է յօրանջում։ Ստեղծագործական աշխատանքի փոխարէն քանդիչ ոյժն է մտել ամենուրեք և մեր բարոյական արիութիւնը բարձրութիւնից ընկել։ Մենք մեղաւոր ենք ճակատում թշնամու դէմ արիաբար կռւող մեր զաւակների բարոյական անկման գործում։

Ճակատի քայքայման պատասխանատուութիւնը ընկնում է թիկունքում աշխատողների վրայ։ Երբ ուղեղը դադարի գործելէ, բազուկին ոյժը ինքնաբերաբար կըսպառուի։

Ներքին քայքայման պատճառով, տևտոնեան յաղթական բանակը թափանցում է մեր հայրենիքի խորքերը։

Տեսէք թշնամու արիւնոտ նիզակը սպառնալիցօրէն ճօճւում է մեր դռան առաջ և կը յոխորտայ ներս խուժել, իսկ մենք ինչ կընենք։

Մենք հանդարտ խղճով փակուած մեր տան մէջ, մեր ինչքերը բաժանելու վիճաբանութեամբ ենք զբաղւում։ Մինչդեռ այդ բանը կարող էինք պատերազմից յետոյ ևս անել, երբ երկրի գլխից հեռանար դամոկլեան սուրը։

Պէտք է սթափուել, որովհետև ողբերգութիւնը իր գագաթնակէտին է հասել։

Սթափուենք միայն մէկ մտահոգութեամբ, ճակատի մտահոգութեամբ։

Թիկունքի հիւանդութիւնը բժշկելու և մեր բոլոր կենսունակ ոյժերը ճակատը լարելու հնարաւորութիւնը ունինք, եթէ կամենանք։ Եթէ հայրենասիրութեան սրբազան կայծերը վառուեն մեր հոգիների մէջ։

Հայրենիքի փրկութիւնը ապահովուած է երկրի բոլոր ոյժերի, խաւերի ու մասնիկների միահամուռ գործունէութեամբ։

Ցաւիտենօրէն պիտի խայտառակուի Ռուսաստանը՝ եթէ այս մեծ ողբերգութիւնը կատարեալ լինի։

Բայց միթէ հայկական ողբերգութիւնը աւելի նուազ սարսռալի է։

Այդ հարցի պատասխանը կը քննենք առաջիկայ անգամին։

Ծ. Թորգոմեան

# ՀԱՅԿԱԿԱՆ ՀԱՐՑԻ ՆԵՐԿԱՆ

Պալքանեան կրկնակ պատերազմներու հաշուեյարդարութենէն յետոյ՝ երբ Եւրոպական Թիւրքիոյ բոլոր քրիստոնեայ թէ իսլամ ճնշուած ազգերը կերպ մը կազատագրուէին Թիւրքիոյ

լծէն, օրուան հարց դարձաւ դիւանագիտութեան համար Հայկական Խնդիրը։

Հայկական Խնդիրը, իր արիւնալից և ցաւալի պատմութեամբ, Պերլինի վեհաժողովէն ի վեր իր լուծումը չստացած այդ խնդիրը՝ ձեռք կառնուէր վերջապէս։

Լոնդոնի և Պոլսոյ խորհրդակցութիւններէն յետոյ, նիզը մնացած Թիւրքիան բոլոր խաղերէն անցնելով և Գերմանիայի մաքիավելլութիւններէն խեղանդամուած, վերջապէս ծրագիր մը դուրս բերուեցաւ՝ Հայաստանի ապահովութեան և բարեկարգութեան պատասխանատու Վեց Մեծ Պետութիւններու կողմէ։

Թիւրքիան ստիպուած էր գործադրել այդ ծրագիրը. այս անգամ վեց պետութիւնները միակամ ըլլալ կը թուէին։

Հայաստանի վեց նահանգները՝ մէջը առնելով Տրապիզոնի նահանգն ալ, երկու ապակեդրոն շրջաններով կը բաժնուէին, ամէն մէկ շրջանը կունենար իր Ընդհ. Քննիչը. (տեսակ մը նահանգապետ), իր փառլամէնտը, վարչական և մասամբ ալ օրէնսդրական ինքնավարութեամբ։ Երկու քննիչները լայն իրաւասութիւններ ունէին և պատասխանատու էին մեծ պետութիւններուն։ Սուլթանին և օսմանեան կեդրոնական իշխանութեան գերիշխանութիւնը պահպանուած էր, բանակը ընդհանուր պետական էր, միայն թէ տեղական զօրքը կը մնար տեղւոյն վրայ։

Թիւրքիոյ Իթթիհատական վարիչները համաթրքութեան մոլուցքէն տարուած, չափազանց յուսահատ էին հարցին այս կերպ լուծումէն…

Եւ դարմանած ըլլալու համար, իբր թէ, երկրին այս «կազմալուծումը» և եօթը նահանգներու անջատումը, կառավարութիւնն հրատարակեց «վիլայէթ գանուննամէսի» մը, որով վարչական ապակեդրոնացում կը մտցնէր երկրին բոլոր մասերուն մէջ։

Այդ «վիլայէթ գանուննամէսի»-ն հայկական վեց նահանգներու և անոնց կցուած Տրապիզոնի նահանգին ալ, ուրիշ բան մը չէր նախատեսէր, եթէ ոչ միւս բոլոր վիլայէթներու նման օրէնսդրութիւն մը։

Այդ մտայնութիւնը շատ զարմանալի էր Պետութեան մը կողմէ, որ կուրօրէն կը մերժէր Հայկական Հողամասին բացառիկ հանգամանքը իր երկրին մէջ, մոռնալով որ այդ բացառիկութիւնը իբր պայման ընդգծուած էր այն վեհաժողովին մէջ՝ որու կը պարտէր իր «անկախութիւնը» Թիւրքիան։

Սակայն նոյն իսկ. վարչական ապակեդրոնացման կեղծ միտումն իսկ սրտանց չէր, այդ խեղճ ու կրակ իտէօլոկներուն մէջ։

Նոյն օրերուն երբ ապակեդրոնացման այդ սիստէմը կը հրատարակուէր իբր օրէնք, օսմանեան համալսարանի իրաւաբանական ֆաքիւլթէին օգնական ուսուցիչներէն մէկը կը հրատարակէր ապակեդրոնացման և կեդրոնացման մասին տեսութիւն մը։ Այդ տեսութեան մէջ յիշեալ մարդուկը կը քննադատէր ապակեդրոնացումը իբրև պետութեան թուլացում և կը գրուատէր խիստ կեդրոնացումը իբր պետական ուժի ու մեծութեան պայման։ Երեք ամսէն այդ տղեկը Պոնիայի համալսարանին տնօրէն կը նշանակուէր և նոյն տարուան ընտրութիւններու առթիւ օսմ. փառլամէնթի Պատգամաւոր կընտրուէր շրջանէն։ Այս դէպքը մեզ համար բաւական լուրջ ապացոյց էր Օսմ. Կառավարութեան բոլոր բարեկարգութեան քայլերուն բանի և ստիպուած ըլլալուն։

Վերջապէս Հայաստանի երկու Քննիչները ճամբայ ելլելու վրայ էին դէպի Նորակազմելի Հայաստանը, նոյն իսկ անոնցմէ մէկը հասած էր Երկիր, երբ Գերմանիան բացաւ համաշխարհային ողբերգութեան իր սարքուածքը։

Պատերազմը սկսաւ նաև Թիւրքիոյ հետ. Թիւրքիոյ հետ պատերազմը՝ կը նշանակէր Արևելեան խնդրին վերջնական հաշուեյարդարութիւնը։

Ընդհանուր խառնակութեան մէջ, հայ ազգը ամենախժդուժ կերպով ոտնակոխ գնաց. Թիւրքիոյ բարբարոսութիւնը, իր միտումներուն մէջ դիմակազերծումը, Հայաստանի կրած գերագոյն տառապանքները աւելի մեծ իրաւունքներ տուին անոր՝ քան մինչ այդ ունեցածը։

Սակայն զարհուրելի status quo-ին պատճառով և պետութիւններու «շահերու» դասաւորման ու գերմանական վտանգին առթիւ, հրապարակին վրայ տիրող ճնշիչ, փտած ու դիւանագիտօրէն գիճային սկզբունքները օդը ցնդեցան։

Դաշնակիցները—հրապարակ իջանք—ըսին—յանուն արդարութեան և ճնշուած ազգերու։ Անգլիան աւելցուց—յանուն պետութիւններու յանձնառութիւններուն, յանուն միջազգային դաշնագիրներուն և բռնադատուած ժողովուրդներուն։

Միացեալ-Նահանգները այդ ամենուն մէջ մտցուցին իտէականօրէն երջանկացած մարդկութեան մը և ազգերու բաղդորոշման դրօշը։

Յեղափոխական Ռուսաստանը եկաւ փարատելու այն ամեն մտատանջութիւններն ու կասկածները որ կարող էինք ունենալ Ցարերու բռնակալութեան հանդէպ...։

Լոյդ Ճորճ, Անգլիոյ նախարարապետը անցեալ օր յայտարարեց թէ «Միջագետքն ու Հայաստանը անպայման այլ ևս օսմանեան տիրապետութեան տակ չեն մնար, անոնց մասին որոշելու է խաղաղութեան կոնկրէն, անպայման այդ երկիրները կստանան իրենց քաղաքական ձևը՝ ըստ անոնց ժողովրդեան բաղձանքին»։

Ժամանակաւոր Կառավարութեան պետ Կերենսկին բացորոշ յայտարարութիւն ըրաւ արդէն Հայաստանի ինքնավարութեան մասին, որ պիտի լուծէ Կովկասի ազգամիջեան կնճիռները, Կովկասահայերու գործունէութեան ծանրութեան կեդրոնը դարձնելով Հայաստանը։

Կըսուի թէ դիւանագիտութիւնը բացորոշ լեզու գործածելէ յետոյ Պելճիքայի, Սերպիայի և այլ նման մանր ազգութիւններու վերականգման ու անկախութեան մասին, չի խօսեր Հայաստանի վրայ բացորոշ կերպով. կամ եթէ կը խօսի շատ աղօտ կերպով։

Այդպէս չէ. հայկական հարցը պատմականօրէն, դիւանագիտօրէն և պատերազմին իսկ փոթորկումէն, դրուած է նպաստաւոր դիրքի մը մէջ, դաշնակիցներու յաղթանակի, այսինքն ամբողջ աշխարհիս Գերմանիոյ բռնակալութենէն ազատուելու պարագային։

Հայկական հարցի պատմական ձախողանքներուն պատճառը, ուրիշ բան չէր, բայց եթէ պետութիւններու հակամարտութիւնը։ Ընդհանուր պատերազմը այդ հակամարտութեան ճակատագրական ելքն էր։ Օսմ. կառավարութիւնը այդ պատերազմին մէջ բռնեց մէկ կողմը, մենք բռնեցինք միւս կողմը, շահերը կը մըղէին երկուքս ալ. մէկ կամ միւս կողմը վճռական յաղթանակին հետ կապուեցաւ նաև մեր դատը։ Միակ սև կէտը ռուս բռնակալութիւնն էր, որ կրնար շատ անակնկալներու առաջ դնել մեր դժբաղդ Հարցը, բայց ահա անսպասելի ուժգնութեամբ այդ բռնակալութիւնը կը խորտակուի և ամենազատ ու ողջմտութեան մէջ իսկ ծայրայեղ նշանաբաններ կանցնին հրապարակ։ Պատմականօրէն մեր դատին երկրորդ և գուցէ ամենէն մեծ հետաքրքրուողը, Ռուսիան՝ կը դառնայ հայկական ինքնավարութեան կուսակից, բնականաբար սկզբունքով։

Գալով դիւանագիտութեան, այն ահարկու աղէտը որ ներկայ պատերազմէն ծնաւ, դիւանագիտութիւնը համոզեց «իրա-

ւախոհութիւններու» առկախ խնդիրներու, ժողովուրդներու ցաւերուն վրայ մոխիր ցանելու, սպառազինուելու, լրտեսելու, վրտանգաւորութեան և սարսափելիութեան մասին։ Ընդհանուր պատերազմը առաջացաւ ճիշտ այդ պատճառներէն, և «ազգային սկզբունք»-ը՝ պետականութեան գաղափարին մէջ, որ 19-րդ դարու վերջին քառորդին մէջ այնքան կը խեղդուէր, այժմ միակ պայմանը կը հաւատացուի աշխարհի խաղաղութեան։ Դաշնակից դիւանագիտութիւնը, որ պատրաստած դաշնագիրներու պատիժը կուզէ տալ Գերմանիային, չի կրնար ջնջել հայկական հարցի դաշնագիրները, իր իսկ ձեռքով ստորագրուած։ Չի կրնար ուրանալ իր իսկ բերնով եղած յայտարարութիւնները։ Այս պատերազմէն յետոյ դիւանագիտութիւնը ստիպուած է մեծ տեղ տալ հանրային կարծիքին, որը չափազանց փափկազգաց դարձած է։

Պատերազմին պատճառով Թիւրքիան պիտի անհետանայ, սակայն Հայաստանը պիտի մնայ իր ապակեդրոնացման վերջին ծրագրով, որու սրբագրիչը Գերմանիան էր. այդ ծրագրին վրայ պիտի աւելնան Լոյդ Ճորճի և Կերենսկիի, Հայաստանի Պիքոնսվիլեաններու և Լոպանոֆներու այժմու փոխանորդներու որոշ յայտարարութիւնները և Միացեալ Նահանգներու վեհ Նախագահին ուղղումները, թէ «Ոչ մէկ իրաւունք ունէ տեղ գոյութիւն պիտի ունենայ, որ ժողովուրդները իբր ստացուածք փոխանցուին մէկ իշխողէն միւսին»։

Ահա թէ ինչ ձևաւորումով կուրուագծուի հայկական հարցի ապագան ներկայիս։

Լ. Թիւթիւնճեան

# ՌՈՒՍԱՍՏԱՆԻ ՏՆՏԵՍԱԿԱՆ ՃԳՆԱԺԱՄԸ

Ռուսաստանի ներկայ տնտեսական ճգնաժամը լուրջ մտահոգութիւն է պատճառում։ Աշխատանքի մինիստր Սկոբելեւը Թիֆլիսի Քաղաք. Դումայում արտասանած ճառով պաշտօնապէս հաստատեց այդ դառն ճշմարտութիւնը, անկեղծօրէն նկարագրելով երկրի տնտեսական քայքայուած վիճակը։

Ռուսաստանի ընդարձակ և արդիւնաբեր երկիրը, որ միշտ նախանձն ու ախորժակն է գրգռել գերման արդիւնաբերութեան, այժմ դատապարտուած է սովի և տնտեսական կազմալուծման։

Ինչու մեր արդիւնաւէտ երկիրը, մեր ընդարձակ հողերը, որ Եւրոպայի հացն էին հայթայթում, չեն կարող այժմ բաւարարել նոյն իսկ տեղական ազգաբնակութեան կենսական կարիքներին։

Այս մասին կարիք չկայ լուրջ ուսումնասիրութեան և երկրի տնտեսագիտական պայմանների մանրակրկիտ քննութեան։ Ով որ ապրել է Ռուսաստանում և համեմատել նրա տնտեսութիւնն ու արդիւնաբերութիւնը Եւրոպայի միւս երկրների հետ, նա հեշտութեամբ կարող է լուծել հարցը։ Հարևանցի մի հայեացքը բաւական է ցոյց տալու այն խղճուկ ու յետամնաց պատկերը, որ ներկայացնում է մեր երկրի արդիւնաբերութեան գործը։

Մեր բնական անհուն հարստութիւնները, բերրի ու արգասաւոր ընդարձակ դաշտերը մնացել են և մնում են անմշակ, արդիւնաբերութիւնից զուրկ։ Դեռ պատերազմից առաջ գերմանացի կապիտալիստները ձեռք էին մեկնում, երկրի արդիւնաբերութեան գործը բոլին կենդրոնացնելու համար, նկատի առնելով արդիւնաբերութեան արդի բարձրագոյն միջոցների այն թոյլ կիրառումը, որ Կռիլովի սայլի նման ընթանում է մեզանում։

Պատերազմը պայթեց և այն կարծիքն էր տիրում, որ Ռուսաստանը կենսամթերքների անհուն պաշար կունենայ և երբ և իցէ չըպիտի նեղուի այդ տեսակէտից, մինչդեռ հակառակ կարծիք էր տիրում Գերմանիոյ նկատմամբ։ Կարծում էր, որ գերմանիան տնտեսական շուտափոյթ քայքայման ենթարկուելով պիտի ստիպուի տեղի տալ։

Բայց դժբաղդաբար չիրականացան այդ յոյսերը։ Գերմանիան ոչ միայն սովի չըմատնուեց շնորհիւ իր զարգացած արդիւնաբերութեան, այլ և ճանապարհ բացեց դէպի Պոլիս, Բաղդադ, Թիւրքիայից ստանալու համար կենսամթերքները, միւս կողմից նա հնձեց այն ընդարձակ ցանքերը, որ ռուսները արել էին Գալիցիայում և ուրիշ ռուսական նահանգներում...

Ռուսական ներքին քաղաքական ճգնաժամը աւելի ևս արագացրեց տնտեսական քայքայումը. երկրի իշխանութեան թուլութիւնը, ներքին վէճերն ու դասակարգային ատելութիւնը օր ըստ օրէ ծանրացնում են ֆինանսական ճգնաժամը։

Այժմ Ռուսաստանի ժողովրդների կենտրոնական մտահոգութիւնը ոչ թէ արտաքին թշնամու և ներքին տնտեսական քայքայման առաջը առնելն է, այլ զբաղուել դասակարգային, կուսակցական վէճերով և գաղափարական ճառերով...

Վիճողներն ու ջուր ծեծողները չեն իմանում, որ դռան առաջ արիւն է հոսում, իսկ տան մէջ հաց չկայ։ Առանց հացի ու առանց երկրի փրկութեան, ոչ մի վարդապետութիւն, ոչ մի գաղափարական յեղաշրջում արժէք չունի։

Գիւղացութիւնն ու աշխատաւոր զանգուածը այժմ սովի ճիրաններին է դատապարտուած, ֆիզիքական գոյութեան խընդիրն է դրուած հրապարակի վրայ։ Առանց մարմնի միտքը չի գործում և գաղափարները չեն կարող հիմնաւորուել։

Պէտք է հաց և զէնք, հացը՝ մեր սովալլուկ մայրերի, քոյրերի ու երեխաների համար և զէնք՝ ճակատում թշնամու դէմ կուրծք տուող մեր քաջարի որդիների ձեռքում, հայրենիքը փըրկելու և ազատելու։

Պետութեան գանձարկղը ժամէ ժամ դատարկւում է, ծախքերը մեծանում և ահռելի չափերի են հասնում, իսկ եկամուտը կրճատւում ու նուազում է, և այդ ոչ թէ որոշ քանակութեամբ, այլ ահռելի չափերով։

Տեսնում էք քաղաքներում անծայրածիր «պոչերը» հացատների առջև, գիւղերի սոված ժողովուրդը և մարդկանց դեղնահար ու վտիտ դէմքերը։

Լսում էք մեր մայրերի աղեկտուր հառաչները, երկիրը յորդող թշնամի հորդաների յաղթական ոռնոցները և թնդանօթների ահռելի կանչը։ Այդ բոլորի հետ, ո՞վ սիրտ ունի արդեօք լսելու տնտեսագիտական, փիլիսոփայական և սոցիալական քարոզները, ո՞վ սիրտ ունի...

Բաւական է որչափ համագումարներով, ճառերով, գրչով և թանաքով իրար գլուխը ջախջախեցինք, այժմ գոնէ տեսնենք մեր երկրի իսկական պատկերը, մեր աղեխարշ ու գետնաթաւալ դրութիւնը և մտահոգուենք միմիայն այդ ուղղութեամբ։

Մենք անդունդի եզրին կանգնած ենք, ներքին տնտեսական կազմալուծումն աւելի արագացնում է մեր անկումը։

Երկրի բոլոր դասերի ու խաւերի միացեալ աշխատանքը միայն կարող է փրկել մեզ անկումից.

Ալ. Մանուկեան

# ԳՈՋԵՐԻ ԵՒ ԲԱԹՆՈՑԻ ԿՈՏՈՐԱԾԸ

(Ականատես կնոջ պատմութիւն)

—Ֆըլա, քընջէխօ դարխա,
Ամէ վօ պը կօժըն։

—Հայեր, հանեցէք ձեր հագուստներ
Մենք ձեզ պիտի կոտորենք։

«Հարուստ ու շէն էր Արճէշի Գոջեր գիւղը. ունէր 70 տուն հայ բնակչութիւն. ամեն տուն լեցուն էր ոչխարներով և տաւարներով, ամենքը կապրէին անհոգ ու անցաւ: 1,500 ոչխար, 1,400 գլուխ սևատաւար ամեն առաւօտ մթնշաղին հանդը կը դիմէր գիւղամիջէն։

Այդպէս հարուստ էր մեր գիւղը։

Ունէինք ս. Յովհաննէսի Երեք-խորան անուն եկեղեցի մը և ծխական վարժարան մը։

Մասնաւոր տուներու մէջ կային ձեռագիր աւետարաններ և ուրիշ ս. գրքեր ու սրբութիւններ, —«Մեռելյարոց Աւետարան», «Նարեկացի», «Կարմիր Աւետարան», «ս. Գէորգի աջը», որոնց ամեն տարի տօնի օրերուն ուխտի կուգային բազմաթիւ ուխտաւորներ։

1914-ի թիւրքական զօրաշարժի օրերուն խանգարուեցաւ մեր գիւղի կարգը. այդ տարին սև հաւը կանչեց մեր երդիքներուն վըրայ ու ամեն ինչ փոխուեցաւ յանկարծակիօրէն. հանդ ու արօտներու կանաչութիւնը դեղընցաւ և դուրսի կեանքը պահ մը կանգ առաւ։

Կառավարութեան կարգադրութեամբ Ռուստամ Զաւուշ և Մեհմեդ օնպաշին իրենց հետ վերցուցած բազմաթիւ զապթիաներ հաւաքեցին զինուորցու երիտասարդներ ու աճապարանքով մը դէպի Վան ուղարկեցին, որոնք այնքան տանջանքներու և չարչարանքներու ենթարկուելու պատճառով չը կրնալով տոկալ, ոմանք գիւղ վերադարձան փախստական վիճակի մէջ պահուելու մտքով։ Այդպիսիներու թիւը ստուգապէս 40-ի բարձրացաւ։

Ալճավազ բնակող Հայտարանցի Էմին փաշան մեզմէ կաշառքներ ու զէնքեր հաւաքելով յուսադրեց մեզ, որ թիւրքերու չարագործութեանց դէմը առնէ պիտի, թիւրքերն ալ իրենց կարգին, իմանալով հայ զինուորներու վերադարձը, զանոնք հետապնդելու դիտաւորութեամբ այրեցին Պօղոյեան Մուրադի, Մանուկեան Սարգիսի, Առաքելի, Ղազարի, Սաֆոյի, Գէորգի և այլոց տուներ, յափշտակելով տան կահ-կարասիներ և միաժամանակ, խլելով անոնց ոչխարներ, բաժնեցին 30-է աւելի զապթիաներու (ոստիկան) և Էմին փաշայի խոլամներուն վրայ։

Մեր տղամարդիկ ամենքը «Գոջերայ Բառօժ» կոչուած լեռն ապաստանած էին, Էմին փաշան գալով յայտարարեց, որ Ականցէն մեծ թուով զօրքեր պիտի գան հայերը բնաջնջելու, այնպէս որ բոլորդ հաւաքեցէք ձեր տղաները ինծ մօտ, ես զանոնք գիշերանց Ռուսաց սահմանը անցնել կուտամ։

Ճար չկար, հաւատացինք, սարերէն գիշերով հաւաքուեցան բոլոր պատանիներ ու երիտասարդներ—թուով 500-է աւելի, որոնց բոլորին Էմին փաշան լեցուց Պօղոյեան Ցարոյի մեծ տունը, ուր մնացին անոնք մինչև գիշեր։

Հինգ կիներու հետ Էմին փաշայի ոտքը գացինք, խնդրելու որ շուտափոյթ կերպով փախցունէ մեր երիտասարդները, սակայն ան յայտնեց, որ պիտի միջամտէ և ազատէ. քիչ ետք եկաւ Ռուստամ Զաւուշը իր զապթիաներով. մինչև անոր գալը Էմին փաշայի հրահանգին համաձայն իր լաճուկները և եղբայրները՝ Թահար աղան և Իւսուֆը, իւրաքանչիւրը 30—40 խոլամներ վերցուցած մտան ու շրջապատեցին Ցարոյի տունը։

Ես ալ իմ տէգրկնոջ Մարիամին հետ ներսն էի մեր տղաներուն մօտը։

—Ֆըլա, քընջէխօ դարխա, ամէ վօ պը կօժըն.—հայեր, հանեցէք ձեր հագուստները, մենք ձեզի պիտի կոտորենք, ափսոս են այդ հագուստները, կարմնտուեն անոնք...

Մերոնք բոլորն ալ հանեցին իրենց շորերը և տուին դիրենք տանջող դահիճներուն. ամեն մէկ իր բաժինը առաւ։ Տ. Եղիազար քահանայի տղան Արշակ իր հետը ունէր վեց հարուածեան ատրճանակ մը, զոր դէպի երդիկ ուղղած՝ կրակեց քանի մը անգամ շփոթեցնելու և վախեցնելու համար։ Քիւրդեր, որ պահ մը դուրս ելեր էին հագուստներն ու զարդերը բաժնելու, ատրճանակի ձայնին վրայ նորէն ներս լեցուեցան, Արշակի ձեռները կուրծքի վրայ խաչել տալով տեղն ի տեղը սպաննեցին։ Այնուհետև երդիկէն ու դռնէն միահամուռ համազարկերով ցորենի հասկերու նման գետին փռեցին մեր խեղճ երիտասարդները. անոնք, որոնք փորձեցին տունէն դուրս փախչիլ, դրան շէմքին վրայ և բակին մէջ կացիններով չարաչար սպաննուեցան...

Կարգը զաւկիս—25-ամեայ Արսէնիս եկած էր, ինքզինքս անոր ոտքերուն ձգեցի դահիճներէն պաշտպանելու համար։

—Մայրիկ, ըսաւ Արսէնս, վեր կաց, գնա փոքրիկ եղբայրներուս հոգը տար, ըսէ անոնց, որ ձեր մեծ եղբայրը և ուրիշ շատերը մեռան իրենց ազգին ու հայրենիքին համար, առանց ուրանալու իրենց կրօնն ու ազգութիւնը. ըսէ անոնց, որ չը մոռնան մեր 500 երիտասարդներու մահը»։

Արսէնը այլևս չէր խօսեր, քիւրդ մը մօտեցաւ և ըսաւ ինծի, «վեր կաց կօրիր, այն գնդակը, որ այս րոպէիս քեզի պիտի դիպչի, կարող է քու երիտասարդ տղան սպաննել ու զուր չանցնիլ, վեր կաց կօրիր». խնդրեցի որ զիս ալ սպաննէ. քիւրդը քըմծիծաղով պատասխանեց.

—Մի աճապարեր, այ կըդ, կարգը կուգայ անշուշտ, առայժմ տղամարդկանց պիտի սպաննենք, ու իրաւ հրացանը որոտաց ու իմ կուրացած աչքերուս առջև հաստաբուն ծառի մը նման գետին փռուեցաւ իմ թառլան Արսէնը...

Դուրս հանեցին զիս, քաշկռտելով տղուս դիակին վրայէն. ուշաթափուած էի...

---

Առտուն քանի մը կիներու հետ զբաղուեցանք մեր հարազատներուն դիակները թաղելով. իմ գոգնոցովս և վերարկուովս ծածկեցի տղուս, Արսէնի մարմինը և թաղեցի Պօղոյի տան շէմքին մօտը.—շրջակայք քանի մը բացուած ցորենի հորեր տեսանք, կրցածնուս չափ լեցուցինք զանոնք դիակներով ու ծածկեցինք, իսկ մեծ մասին՝ քիւրդերը չուանները վզերնուն անցուցնելով, գիւղին մէջէն քաշկռտելով դուրս հանեցին դաշտը շուներուն ու թռչուններուն համար...

Յոյսերս կտրեր, սև սրտեր էինք. քիւրդերն ու զապթիաները մուրիկ-մուրիկ կը փնտռէին ու կսպաննէին հանդիպած հայերը գիւղին մէջ ու շրջակայքը. փախանք դրացի գիւղերու մէջ, անոնք ալ չընդունեցին մեզի իբրև Էմին փաշայի «ֆլաներ». վերջինս մեզի Բաթնոց ուղարկեց։

---

Բաթնոցի հայերը տակաւին կոտորուած չէին. այստեղ հանդէս եկաւ բէօռ-Հիւսէին փաշան. անիկա հրաման արձակեց բոլոր հայերուն, որպէս զի պատրաստուեն զինուոր երթալու. հայեր փա-

*շայի խոստումներուն հաւատալով իրենց ունեցած զարդերն ու դրամները գրպաններին դնելով գնացին։ Հիւսէին փաշան գոհ էր, ան հաւաքեց և դրամը և հայերը։*

*Գեղեցիկ Բաթնոցի երիտասարդները, կըսես մէյ-մէկ զինուորներ ըլլային. Հիւսէին փաշան հաւաքեց այդպիսի 120 ջահելներ, խառնեց Կըզըլ-Կայա գիւղի 60 երիտասարդներին, կապել տուաւ անոնց թեւերը և զրկեց Դութաղի տակ, Մուրադ գետին ափը, ուր ամենքը առանց դնդակահարուելու գետը նետուեցան...*

*Արածանիի երեսը պահ մը բռնուեցաւ մարդկային դիակներով, սակայն շուտով գետի յորձանքը կուլ տուաւ այդ դըժբաղդներն ալ. չէ՞ որ ոչ վերջիններն են անոնք և ոչ ալ առաջինները...*

---

*Կըզըլ-Կայա գիւղի երիտասարդներուն մէջ կը գտնուէր իմ երկրորդ որդին՝ Սաղաթէլը, որուն թեւերը կապելով Էմին փաշային ճամբեցին իբրև «անոր սեփականութիւն». երկրորդ որդիս նոյնպէս չարաչար սպաննուեցաւ փաշայի խոլամներուն ձեռքով, բազմամարդ գիւղէն ազատուեցան միայն եօթ տղամարդիկ—Իսրայէլ, Սաֆօ, Ենովք, Մադօ, Պետօ, Սեդրաք, Գիլամ և ութ հոգիի չափ ալ 10 տարեկան երեխաներ։*

*Էմին փաշայի խոլամներն ու լամուկները իրենց վրայ բաժնեցին մեր գիւղի 40 գեղեցիկ աղջիկներն ու հարսները և 20 երեխաներ։*

---

*1915-ի մայիսի վերջերուն, Ռուսական արշաւանքէն ետք, քիւրդեր մեր և իրենց սայլերուն վրայ փոխադրեցին մեր ունեցած-չունեցածը ու մենք ջարդուած ու կողոպտուած՝ նոյն Թաւի Վարդավառին Կովկաս ապաւինեցանք, տղամարդկանցմէ զուրկ 55 ընտանիքներու հետ։*

*Երևան* *Հր. Բազրունի*

# ՔԱՂԱՔԱՅԻՆ ԴՈՒՄԱ

*(Օգոստոս 7-ի նիստը)*

*Նախ քան նիստն սկսուելը, երեկոյեան ժամը 7-ին Երևանեան հրապարակում կայացաւ մեծ միտինգ Նոր դումայի բացման առթիւ, որը տևեց մինչև երեկոյեան ժամը 10-ը։*

*Ժամանակից առաջ հասարակութիւնը լցրել էր դահլիճի վերնայարկն ու միջանցքը։*

*Իրաւասուների տեղերը դասաւորուել են այսպէս. ծայրայեղ ձախ նստել են բոլշևիկները, նրանց կից բռնել են սոցիալ-դեմոկրատները (մենշևիկներ), ապա սոցիալիստ-յեղափոխականները, յետոյ դաշնակցականները, ֆեդերալիստները, նացիոնալ-դեմոկրատները, թիւրքերը, հրէաները և կադետները։*

*Երեկ. ժամը 8 և կէսին քաղաքագլուխ Ալ. Խատիսեանը նիստը յայտարարում է բացուած,—և ասում, որ այսուհետև քաղաքի իշխանութիւնը անցնում է կազմակերպուած յեղափոխական դեմոկրատիայի ձեռքը, յանձին նրա ներկայացուցիչների։ Հնի վերագնահատումից և Նորի կատարելիքների մասին խօսելուց յետոյ, քաղաքագլուխը առաջարկում է յոտընկայս յարգել այն մարտիկների յիշատակը, որոնք իրենց արեան գնով մեզ տուին այսօրուայ ազատութիւնը, այսօրուայ դեմոկրատիկ դուման։ Դուման ոտքի է կանգնում։ Իր ճառի վերջում նախագահը գտնում է, որ լոզունգը լինելու է՝ միացում բոլոր կենդանի, յեղափոխական ուժերի և համերաշխ աշխատանք, որի մէջ է գտնւում ազատութեան պաշտպանութիւնը (ծափեր)։ Անցնելով օրակարգին՝ նախագահ Ալ. Խատիսեանը յայտնում է, որ իրաւասուների թիւը 120 է, բաժանած 9 կուսակցութիւնների և խմբակների. իրաւասուներն ունեն մօտ 400 թեկնածուներ, որոնք կը փոխարինեն հեռացող իրաւասուներին, ըստ ցուցակների։ 149,942 ընտրողներից իրաւասուների ընտրութեանը մասնակցել են 92,677 մարդ, որ պէտք է բաւարար թիւ համարել. 772 ձայն ընտրել է մէկ իրաւասու. դումայի հին կազմից մասնակցում են 21 մարդ։*

*Սոցիալ-դեմոկրատների ֆրակցիայի կողմից Ե. Գեգեչկորին կարդում է իր ֆրակցիայի դեկլարացիան։*

*Հ. Յ. Դաշնակցութեան դումայի ֆրակցիայի կողմից խօսեց Յս. Կարճիկեանը։*

*Բոլշևիկների կողմից արուած յայտարարութեան միջոցին, նիստի դահլիճն է մտնում աշխատանքի մինիստր Սկոբելեը, որին դիմաւորում են երկարատև ծափերով։*

*Նախագահը դումայի կողմից ողջոյնի խօսք է ուղղում նըրան, յայտնելով լիակատար պատրաստակամութիւն աշխատելու յօգուտ իրենց ընտրող դեմոկրատիայի շահերի և յօգուտ ազատութեան և յեղափոխութեան պաշտպանութեան։*

*Իր պատասխան-ճառի մէջ մինիստրը նկատում է, որ անհրաժեշտ է իշխանութիւնների արագ և դեմոկրատական հողի վրայ կազմակերպուելը. այնտեղ, ուր չկայ իշխանութիւն՝ յեղափոխութիւնը վտանգուած է համարւում. յիշելով, որ հին կառավարութեան խորտակումից յետոյ անմիջապէս հիմնուած Բանւ. և Զինւ. Պատգամաւորական խորհուրդը պահակի պէս կանգնած է յեղափոխութեան պաշտպանութեան համար, նա ամեն կերպ աշխատում է երկրի դրութիւնը նորմալ դարձնել։ Ձեր ընտրութիւնը ցոյց է տալիս ձեր հասունութիւնը, որի համար ողջունելով հանդերձ, ցանկանում եմ, որ օրինակ հանդիսանայ Սահմանադիր Ժողովի ընտրութիւնների համար։ Ներկայ լինելով դեմոկրատիկ սկզբունքներով կազմուած դումայի առաջին նիստին, զգում եմ, որ արդէն կազմւում են սովորական պետական կազմեր։ Կըրկին ողջունելով դումային, մինիստրը կոչ է անում ամեն բան անել, յօգուտ յեղափոխութեան, շեշտելով կենդանի յեղափոխական ուժերի համերաշխ գործակցութիւնը։ Մինիստրը իր ճառը վերջացնում է բուռն ծափերի տարափի տակ։*

*Նախագահ Ալ. Խատիսեանի առաջարկութեամբ մինիստրը լսում է դեկլարացիաները։*

*Իրաւասու Նազարճէն կարդում է սոցիալիստ-յեղափոխականների դեկլարացիան։*

*Կադետների ֆրակցիայի կողմից յայտարարութիւն է անում իրաւասու Սիմէոնովը։*

*Մեկնելուց առաջ մինիստր Սկոբելեը անհրաժեշտ է համարում երկրի ֆինանսական կացութեան մասին տալ ճշգրիտ տեղեկութիւններ, որպէս զի դուման, ինչպէս ուրիշ մարմիններ, տեղեակ լինեն իրենց ապագայ գործունէութեան համար։ Նոր, յեղափոխական կառավարութիւնը,—ասաց մինիստրը,—իր 5 ամսուայ գործունէութեան ընթացքում չկարողացաւ ոչ միայն երկրի տնտեսական քաօս դրութիւնը բարելաւել, այլ նրա օրօք աւելի և աւելի է վատթարանում մեր տնտեսական կացութիւնը։ Երկիրը ապրում է ֆինանսական սնանկութեան նախօրեակին։ Պատերազմի ծախսերը ժամերով է աւելանում. Նոր կառավարութեան մարմինների կազմակերպութիւնները շատ թանգ են նըստում։ Այժմ Ռուսաստանում կանոնաւոր գործում է միմիայն պետական թղթադրամ տպագրող գործարանը, որի արտադրութիւնը մաքսիմումից անց է կացել. շուտով ստիպուած կը լինենք*

մեր Թղթադրամը տպագրել տալ արտասահմանում։ Անհրաժեշտ է մտածել միջոցների խնայողութեան մասին։ Հայրենիքը կանգնած է մեծ վտանգի առջև, պետական գանձարանը դատարկ է։ Այդ մասին կառավարութիւնը պէտք է զգուշ նախազգուշացնել ամենքին. ծանր կացութիւնից դուրս գալու մեր գեղատոմսն է՝ անվերջ զոհաբերութիւններ. ցոյց պէտք է տալ, որ ոչ միայն քաղաքականութիւն, այլ տնտեսագիտութիւն վարել գիտենք։ Իր խօսքի վերջում մինիստրը պնդում է յեղափոխական ոյժերի միացեալ, համերաշխ գործակցութեան վրայ (աղմկալի ծափեր)։

Քաղաքագլուխ Ալ. Խատիսեանը յայտնելով պատրաստակամութիւն գործելու ի պաշտպանութիւն պետութեան և յեղափոխութեան փրկութեան՝ խնդրում է մինիստրին դումայի ողջոյնը յայտնել Թիֆլիսի պատուաւոր քաղաքացի կ. Չխէիձէին, յայտնելով միաժամանակ, որ պէտք է շտապեցնել Սահմանադիր ժողովի գումարումը։

Մինիստրը ծափերի տարափի տակ հեռանում է նիստի դահլիճից։

Այնուհետև դուման անցնում է նախագահի ընտրութեան։ Սոց.-դեմոկրատների ֆրակցիան դնում է Ե. Գեգեչկորիի Թեկնածութիւնը։

Սոց.-յեղափոխ. ֆրակցիան յայտարարում է, որ իրենք ընտրութեանը ձեռնպահ են մնալու. բոլշևիկների ֆրակցիան յայտարարում է, որ դէմ են քուէ տալուն, իսկ դաշնակցականների ֆրակցիայի կողմից Հ. Օհանջանեանը յայտարարում է, որ՝ որովհետև իրենց առաջարկած կազմով (օգնականների հետ միասին) չէ լինելու ընտրութիւնը, իրենք ևս դէմ լինելով՝ սև քուէ են տալու։

Գաղտնի քուէարկութեամբ Գեգեչկորին ստացաւ 53 ընտրական ձայն, 26 դէմ, 14 ձեռնպահ։ Այսպիսով մի տարի նախագահ ընտրուեց Ե. Գեգեչկորին։

Բանելով նախագահական աթոռը նա շնորհակալութիւն է յայտնում իրեն ընտրողներին և խոստանում իր գործունէութեան ընթացքում փրակցական սխալներ չթողնել, որի համար դումայի աջակցութիւնը խնդրեց։ Միաժամանակ նա յայտարարեց, որ ինքը հրաժարւում է ռոճիկից։

Նախագահ Գեգեչկորին շարունակելով նիստը անցնում է օրակարգի խնդիրներին։

Մոսկուայի պետական խորհրդակցութեանը դուման որոշել է ուղարկել 2 ներկայացուցիչ։ Ընտրւում են Իշկով (սոց.-դեմ) և Ներուչև (սոց.-յեղափոխ.)։ Առաջինն ստացաւ 56 սպ. 25 սև, երկրորդը՝ 62 սպ. 21 սև։

Նիստը փակուեց գիշերուայ ժամը 12 և կէսին։

Յաջորդ նիստը նշանակուեց հինգշաբթի, օգոստոսի 10-ին, որտեղ լինելու է քաղաքային վարչութեան, քաղաքագլխի և քարտուղարի ընտրութիւն։

# Տարեգիր Կ. Հ. Բ. Ընկ.

Կ. Հ. Բ. Ընկ. շնորհակալութեամբ ստացաւ պ. Միք. Սուլեանից 986 կտոր գիրք Ընկ. գրադարանի օգտին։

— Շուշանիկ Սուքեանցի անուանակոչութեան ժամանակ յօգուտ որբերի հաւաքուած է 168 ռ.։ Նուիրատուներն են Իվան Գրիգորեան Բաղդասարեան 50 ռ., Կարապետեան Արամ 10 ռ., Զուբեան Կարապետ 50 ռ., Ծատուրեան Գրիգոր 10 ռ., Զուբեանց Իվան 20 ռ., Զուբեանց Ալէքսանդր 25 ռ., Մարութեանց Սմբատ 5 ռ., Կարապետեան Յակոբ 5 ռ., Յովսէփեան Կարապետ 3 ռ.։

## ՀԱՅԿ. ԿԵՆՏ. ԿՈՄԻՏԷ

1) Հայկ. Կենտր. Կոմիտէի հովանաւորութեան տակ գտնուող «Մի բաժակ Թէյ»-ը յունիս ամսում մուտք է ունեցել 12,060 ռ. 08 կ., ղանազան ծախս՝ 9581 ռ. 63 կ., մաքուր արդիւնք՝ 2,478 ռ. 45 կ.։

Յուլիս ամսուայ մուտքն է՝ 17,438 ռուբլի 06 կ., ծախս՝ 12,730 ռ. 96 կ., մաքուր արդիւնք՝ 4707 ռ. 10 կ.։

2) Փախստականների Խորհրդի գործադիր կոմիտէն յայտնել է առանձին գրութեամբ Կոմիտէիս, որ պէտք է տեղումս գտնուող հայ փախստականներին անմիջապէս ցրուել գաւառները, ուր և նրանց կը տրուի պետական նպաստ, իսկ Թիֆլիսում մնացողները կը զրկուեն նպաստից։

3) Կենտր. Կոմիտէի հովանաւորութեան տակ գտնուող որբանոցներից նրանք, որոնք տեղաւորուած են խտացած վայրերում, մօտիկ ապագայում կը տեղափոխուեն Ջալալ-Օղլի, ուր և վարձուած են մի քանի հատ մեծ և ընդարձակ բնակարաններ։

## ՊԱՐԵՆԱՒՈՐՄԱՆ ԲԱԺԱՆՄՈՒՆՔ ՊԵՏ. ՄԻՋՈՑՆԵՐՈՎ

Գաղթականութեան պէտքերի համար յատկացուած 167 վագոն ալիւրը օգոստոս ամսում բաժանուած է հետևեալ կերպով. Գանձակի նահանգի գաղթականութեան՝ 7 վագոն, Ղարսի և Բաթումի շրջանների՝ 20, Երևանի նահանգի՝ 97 և գրաւուած վայրերի՝ 43 վագոն։

Վերջին ժամանակ մենք հնարաւորութիւն չենք ունեցել տալ շաբաթական տեղեկութիւններ գաղթականութեան համար ուղարկուած ալիւրի քանակի մասին, որովհետև նախ՝ այժմ ալիւր հիւսիսային Կովկասից ուղարկւում է անմիջապէս պահեստներին, երկրորդ՝ տեղից ուշ տեղեկութիւն ենք ստանում։

Գաղթականութեան համար յատկացրած ալիւրը ուղարկւում է նահանգական պարենաւորման կոմիտէների հասցէին։ Յունիս և յուլիս ամիսներում մի քանի Թիւրիմացութիւններ տեղի ունեցան պարենաւորման կոմիտէների հետ, որոնք ուրիշ միջոց չգտնելով տեղական ժողովրդի պահանջներին բաւարարութիւն տալու, մինչ գաղթականութիւնը գտնւում էր ծայր աստիճան կարիքի մէջ, քանիցս գրաւման ենթարկեց վերջիններիս համար ստացուած ալիւրը։

Այժմ դրութիւնը այդ կողմից պիտի մխիթարական համարել, որովհետև Երևանի նահանգական պարենաւորման կոմիտէի նախագահը հեռագրով կարգադրութիւն է արել նահանգի կայարանապետներին, որպէս զի վերջիններս առանց արգելքի յանձնեն Ընկերութեանս լիազօրներին՝ գաղթականութեան պէտքերին յատկացուած ալիւրը։

Գալով ուրիշ մթերքներին, ինչպէս օրինակ՝ շաքարին, բրինձին, սապոնին, Թէյին և այլն, պէտք է ասել, որ այս մթերքների պաշարը պակասելու պատճառաւ Ընկերութիւնս ստիպուած է ծայր աստիճանի խնայողաբար վերաբերուել, որովհետև նախ՝ յոյս չկայ նոր գնումներ կատարել, երկրորդ՝ եղած պաշարը վերջանալու վրայ է։ Այն ինչ մինչև այժմ երբ Ընկերութիւնս ամենայն պատրաստակամութեամբ օգնութեան էր հասնում զանազան հիմնարկութեանց, ինչպէս օրինակ Քաղաքների Միութեան, Եղբայրական Օգնութեան, «Նպաստամատոյց»-ին, Մոսկուայի Հայոց Կոմիտէին և այլն, այժմ միանգամայն այդ հնարաւորութիւնից զրկուած է։

Վերջին ժամանակ միայն յաջողուեց Ռոստովում գնել մի վագոն սապոն, բայց երբ ցանկութիւն յայտնեցինք մի քանի վագոն ևս գնել, Ընկերութեանս սապոն մատակարարողը տեղեկացրեց մեզ, որ սոդա չը լինելու պատճառաւ հնարաւորութիւն չունի կատարելու Ընկերութեանս առաջարկը։

Շաքար ձեռք բերելու միանգամայն յոյս չկայ, չնայած այդ մասին ուժեղ կերպով միջամտում է գաղթականական գործի գլխաւոր խորհուրդը (Совѣтъ по устройству бѣженцевъ кавказскаго фронта). բրինձի պաշարը նոյնպէս վերջացած է և յոյս չը կայ, մինչև նոր բերքը, ձեռք բերելու։ Վերջերս միայն, երկու, ամբողջ ամիս սպասելուց յետոյ, տեղեկութիւն ստացանք, որ մեր 4 ամիս առաջ գնած 800 արկղ մակարոնը և 415 արկղ սապոնը արդէն պատրաստ է նաւին յանձնելու (Նովորոսիյսկում)։

Թիֆլիս վերադարձաւ Ընկերութեանս լիազօր պ. Դ. Արամեանցը, որը ուղարկուած էր Պարսկաստանի և գրաւուած վայրերի պահեստների գործունէութիւնը քննելու։

## Քրոնիկոն

Օգոստոսի 10-ին գումարուած քաղաքային դումայի նիստում Թիֆլիսի քաղաքագլուխ ընտրուեց քաղաքի պարենաւորման կոմիտէի նախագահ Էլիավան։

—Դիլիջանից հաղորդում են, որ այնտեղ ծանր կերպով հիւանդացել է մեր Թերթի աշխատակից պ. Տ. Աթարբէգեանը։

—Պետրոգրադից հաղորդում են, որ վերջնականապէս որոշուած է Հիմնադիր Ժողովի գումարումը յետաձգել մինչև նոյեմբեր։

—Գաղթականների Խորհուրդը հաղորդել է Հ. Կ. Կոմիտէին, որ գաղթականները հեռանան Թիֆլիսից, որպէս զի կարողանան նպաստ ստանալ։

—Օգոստ.-ի 8-ին Թիֆլիս ժամանեց աշխատանքի մինիստր Սկոբելեը, որ եկած էր Բագու, նաւթային գործերում աշխատող բանուորների գործադուլի հարցը քննելու։ Միւս օրը մինիստրը մեկնեց Մոսկուա՝ խորհրդակցութեան մասնակցելու համար։

—Հայկական Ջանջալու (Երևանի նահ.) գիւղից հաղորդում են Կովկ. բանակի կենդրոնական խորհրդին, որ քրդերը յարձակուել են գիւղի վրայ և սպանել 20 մարդ, վիրաւորել՝ 25, տարել են 2 կին և մի հօտ ոչխար։

—„Извѣстія С. С, Д.“ խմբագրութեան Եայջա (Երևանի նահ.) գիւղից հեռագրում են, որ պահակախմբի զինուորները յարձակուել են բնակչութեան վրայ և ծեծել։ Վիրաւորուածների թիւը հասնում է 6-ի։ Զինուորները ձերբակալել են 20 անմեղ մարդու։ Խնդրում են պահակախումբին հեռացնել։

—Երկուեա.-հաւատարմատարների կողմից Մոսկուայի խորհրդակցութեան համար ներկայացուցիչներ են ընտրուել Գ. Խատիսեանը և Ի. Ի. Ջուրաբովը, իսկ Կովկ. բանակի կենտրոնի կողմից ընտրուել են՝ Փիրումեան, Թարխանեան, Վինդերֆելդ, Հէյնիկէ և Կիրիակով։

## Համաշխարհային պատերազմը

Ռուսաց արևմտեան ճակատում՝ վերջին շաբաթուայ ընթացքին լարուած թնդանօթաձգութիւն է։ Ռուսական զօրքերը ամրանում են նոր դիրքերում։ Օգոստոսի 8-ին Տուրկումի ուղղութեամբ, Տիրուլ ճահճից արևմուտք՝ թշնամին յարձակում սկըսեց և նեղեց մեր զօրամասերը։ Երկրորդ օրը կրկնելով նոր յարձակումներ նոյն լճի եզերքը, պատռեց մեր գիծը։ Բուրիթ լճի մօտ յետ մղեցին թշնամու գրոհները։ Բրոդի-[illegible] գծի վրայ թնդանօթամարտ է։

Երկու շաբաթուայ ընթացքում ռումանական ճակատի վըրայի կռիւները ստացել էին ահեղ բնոյթ, որովհետև թշնամին փորձում էր պատռել Պուտնի և Ֆոկշանի ճակատը, ուր Մակէնզէնն ուղղել էր 6 դիւիզիայի ամբողջական հարուածը, գործի մէջ դնելով շատ թնդանօթներ։ Ռուս-ռումանական զօրքը յամառութեամբ վանեց թշնամու գրոհները, վերցնելով բազմաթիւ գերիներ։ Գերիների ընդհանուր թիւը, սկսած յուլիսի 24-ից, հասնում է 4000 հոգու. վերցուած են նոյնպէս 40 գնդացիր և 1 հըրետանի։ Մակէնզէնի ծրագիրը օդը ցնդեց, նրա 6 դիւիզիաները ուժաթափուած և կազմալուծուած պիտի համարել։ Այժմ սկըսուել է նոր հարուած Օկնայի ուղղութեան վրայ։

Ռումանական ճակատում՝ թշնամին ռմբակոծում է Սերետի դիրքերը. գրաւուեց մի բարձունք։ Օկնինի կռիւը շարունակւում է։ Ֆոկշանի ուղղութեամբ ռումանացիք յետ մղեցին թշնամու յարձակումները։

Կովկասեան ճակատում՝ Փենջուինի ուղղութեան վրայ մեր զօրամասերը շարժուեցին դէպի Խորասանի կիրճը և գրաւեցին Ասպարապաղից արևմուտք գտնուած Մերիվանի վայրը։

Ֆրանս-անգլիական ճակատում՝ Վերդենից հիւսիս ֆրանսական զօրքերը Մաասի երկու ափերին խլել են գերմանական նշանաւոր ամրութիւնները 18 կիլոմետր երկարութեամբ և 2 կիլոմետր խորութեամբ։ Գրաւել են Մորտոմի երկու բարձունքները, Տէ Կորրոյի անտառը, Կիւմէրը, Րալի բարձունքը։ Գերի են բռնել 4000 գերմանացի։ Մեր սաւառնակները ոչնչացրին թշնամու 10 սաւառնակ։ Գիշերը թշնամին կրկին սկսեց յարձակուել Վերդենի մօտ, բայց մեծ կորուստներով յետ մղուեց։ Ֆրանսացիք ամրացել են արդէն նոր դիրքերում. գերիների թիւը հասնում է 5000-ի, որից 116 սպայ։

Իտալական ճակատում՝ օգոստոս 8-ին Իւլիան-Ալպերի ճակատում կռիւը ուժեղ բնոյթ ստացաւ. մեր զօրամասերը յաջողութեամբ յարձակւում են թշնամու դիրքերի վրայ Կարսոյի մօտ և ծովափին։ Գերիների թիւը հասնում է 10,103 զինուոր և 243 սպայ։

Խմբագիր՝ ՍԱՄՍՈՆ ՅԱՐՈՒԹԻՒՆԵԱՆ
Հրատ. Կ. Հ. Բ. ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ



Тип. «СЛОВО» Гимназическая ул. № 1